

Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

№ 7
ԱՊՐԻԼ
1964

ՀԿՊ Կենտկոմի գաղափարական աշխատանքի բաժին

Լույս է տեսնում ամիսը երկու անգամ

ՆՅՈՒԹԵՐ ԶԵԿՈՒՅՈՒՄՆԵՐԻ ԵՎ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ ԴԵՊԻ ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ՀԱՂԹԱՆԱԿ

(Տպագրվում է Վ. Ի. Լենինի ծննդյան 94-րդ տարեդարձի առթիվ)

*1964 թվականի ապրիլի 22-ին լրանում է մեր սիրելի ու հարազատ, մեծ առաջնորդ Վլադիմիր Իլյիչ Լենինի ծննդյան 94-ամյակը, որը բացառիկ ջերմությամբ են նշում սովետական ժողովուրդը և աշխարհի ամբողջ առաջադեմ մարդկությունը։ Եվ դա հասկանալի է, որովհետև Լենինի կյանքն ու գործունեությունը ռևոլյուցիոն տիտանի հերոսապատում է, որն իր կնիքը դրեց պատմության զարգացման վրա և աշխատավոր մասսաներին բերեց ու բերում է լիակատար ազատություն, կենսուրախ ու երջանիկ կյանք։ Խորապես արդարացի ու երախտապարտ են հնչում ֆրանսիական ականավոր գրող Հանրի Բարբյուսի իմաստուն խոսքերը, որ Լենինը պատմության մեծագույն կերտողներից մեկն էր, և ոչ ոք ավելին չի արել աշխատավոր մարդկության համար, քան նա։ Ահա թե ինչու Լենինի անունն անսահմանորեն թանկ է հարյուր միլիոնավոր մարդկանց համար, և նրան ճանաչում են աշխարհի ամենահեռավոր անկյուններում։*

*Անառարկելի ճշմարտություն է, որ մեծ դարաշրջաններն առաջադրում են մեծ մարդիկ։ Համաշխարհային պատմության մեջ XX դարը ժողովրդական մասսաների ռևոլյուցիոն սխրագործությունների դար է, կա-*

պիտալիզմի կործանման և կոմունիզմի հաղթանակի
դար։ Եվ մարդկության զարգացման մեջ այդ մեծագույն
հեղաշրջումն անխզելիորեն կապված է Լենինի անվան
հետ, անուն, որը դարձել է նոր աշխարհի խորհրդանիշը՝
արևմուտքից մինչև արևելք, հարավից մինչև հյուսիս։
Վ. Ի. Լենինը գիտական կոմունիզմի հիմնադիրներ
Կարլ Մարքսի և Ֆրիդրիխ Էնգելսի անմահ գործի հան-
ճարեղ շարունակողն է։ Նա հանդես եկավ որպես ստեղ-
ծագործական մարքսիզմի կորիֆեյ և կանգնեց իր լա-
վագույն ուսուցիչների շարքում։ Ավելին, Լենինը ոչ
միայն զարգացրեց ու մի նոր աստիճանի բարձրացրեց
պրոլետարիատի ու աշխատավոր մասսաների ազա-
տագրական շարժման ուսմունքը, այլև անմիջականո-
րեն գլխավորեց մասսաների ռևոլյուցիոն պայքարը և
հասավ պատմական մեծ նվաճումների։
Վ. Ի. Լենինը կոմունիստական պարտիայի ու սովե-
տական պետության հիմնադիրն ու ղեկավարն է, մի-
ջազգային պրոլետարիատի և բոլոր աշխատավորների
ուսուցիչն ու առաջնորդը։ Լենինի անունն ամենատա-
րածվածն է աշխարհում և նրա հետ առաջադեմ մարդ-
կությունը կապում է իր լավագույն իղձերն ու նպատակ-
ները։ Ապրում ու հաղթանակում է լենինիզմը և մարդկու-
թյանը տանում է դեպի պայծառ ապագա։ ՍՄԿՊ XXII
համագումարը նոր ուժով դրսևորեց լենինյան գաղա-
փարների ստեղծագործական ոգին և ամբողջ աշխար-
հին տվեց իդեալական հասարակության՝ կոմունիզմի
կառուցման մեծագույն խարտիան, որն ազդարարեց
կոմունիզմի մեծ միսիայի մասին՝ բոլոր ժողովուրդնե-
րի համար Խաղաղություն, Աշխատանք, Ազատություն,
Հավասարություն, Եղբայրություն ու Երջանկություն
հաստատելու մասին։
Սովետական ժողովուրդը տրադիցիոն կերպով միշտ
էլ քաղաքական, տնտեսական ու կուլտուրական վերել-
քով է նշում իր անմահ առաջնորդի ծննդյան տարեդար-
ձը։ Այդ առավել ևս վերաբերում է մեր օրերին, երբ
համաժողովրդական պայքար է ծավալվել ՍՄԿՊ XXII
համագումարի պատմական որոշումների, պարտիայի
ծրագրի՝ կոմունիզմի կառուցման ծրագրի կենսագործ-
ման համար։
Հայտնի է, որ Վ. Ի. Լենինը, որպես աշխարհում ա-
ռաջին բանվորա-գյուղացիական պետության հիմնա-
դիր և սովետական առաջին կառավարության ղեկա-







վար, մշակեց ՍՍՌՄ-ում սոցիալիստական հասարակու-
թյան կառուցման հոյակապ պլանը։ Այդ պլանի բաղ-
կացուցիչ մասերն էին երկրի ինդուստրացումը, գյու-
ղատնտեսության սոցիալիստական վերակառուցումը և
կուլտուրական ռևոլյուցիան։ Մեր երկրում արդեն կեն-
սագործվել է սոցիալիզմի կառուցման լենինյան ծրա-
գիրը, իսկ այժմ հաղթականորեն գնում ենք դեպի կո-
մունիզմ։ Կոմունիզմի ծիլերից դեպի լիակատար կոմու-
նիզմ՝ ահա այն ուղին, որը կանխագծել է Վ. Ի. Լե-
նինը և որով շարժվում է մեր երկիրը Հոկտեմբերից
հետո։
ՍՄԿՊ XXI համագումարը մատնանշեց, որ մենք
հասել ենք սոցիալիզմի լիակատար ու վերջնական հաղ-
թանակին և թևակոխել կոմունիզմի ծավալուն կառուց-
ման ժամանակաշրջանը։ ՍՍՌՄ զարգացման 7-ամյա
պլանը (1959—1965 թթ.) այդ ժամանակաշրջանի ա-
ռաջին մարտական ծրագիրն է, որը կատարում ու գե-
րակատարում է սովետական ժողովուրդը։ Բավական է
նշել, որ յոթնամյակի 5 տարում համախառն հասարա-
կական արդյունքն ավելացել է 39 տոկոսով, ընդ որում
արդյունաբերության ասպարեզում տրվել է 37 միլիարդ
ռուբլու արժողությամբ արտապլանային արտադրանք
և դա հիմնականում աշխատանքի արտադրողականու-
թյան բարձրացման հիման վրա։ Միայն 1963 թվակա-
նին շարք են մտել 700 նոր արդյունաբերական խոշոր
ձեռնարկություններ։ Ուժեղ տեմպերով առաջ է
գնում երկրի էլեկտրիֆիկացումը. 1963 թվականին
արտադրվել է 412 միլիարդ կիլովատ-ժամ էլեկտրաէ-
ներգիա, որը 206 անգամ գերազանցում է 1913 թվակա-
նի մակարդակը։ Մեծ առաջնորդ Վ. Ի. Լենինը
հիացմունքով էր խոսում ԳՈԷԼՌՈ-ի պլանի մասին, որը
նախատեսում էր 10—15 տարում երկրում կառուցել
1,5 միլիոն կիլովատ ընդհանուր կարողությամբ էլեկ-
տրակայաններ։ Սովետական ժողովուրդն այդ պլանը
կատարեց 11 տարում, իսկ միայն 1963 թվականին գոր-
ծարկվեցին ավելի քան 10 միլիոն կիլովատ նոր կա-
րողություններ, այսինքն՝ մեկ տարում կատարվեց
ԳՈԷԼՌՈ-ի գրեթե յոթ պլան։ Շահագործման է հանձնը-
վել մի այնպիսի հսկա, ինչպիսին է Բրատսկի հիդրո-
էլեկտրակայանը, որի տուրբինների հզորությունը 3
անգամ մեծ է ցարական Ռուսաստանի բոլոր էլեկտրա-
կայանների ընդհանուր կարողությունից։
Վիթխարի նվաճումներ են ձեռք բերվել նաև մետա-

լուրգիայի ասպարեզում։ 1963 թվականին մեր երկրում արտադրվել է 58,7 միլիոն տոննա չուգուն, 80,2 միլիոն տոննա պողպատ։ Խստորեն ավելացել է նաև ցեմենտի արտադրությունը՝ 1953 թվականի 16 միլիոն տոննայից հասնելով 61 միլիոն տոննայի։

Տնտեսության զարգացման այդ յոթմզոնյան քայլերը վկայում են, որ յոթնամյակի ընթացքում արդյունաբերության մեջ արտադրության ծավալը կավելանա ոչ թե 80 տոկոսով, ինչպես նախատեսված էր, այլ 86 տոկոսով և պլանային առաջադրանքներն անպայման կգերակատարվեն։

Այժմ միայն չարամիտ մարդիկ կարող են չտեսնել սովետական ժողովրդի աննախընթաց վերելքը։ Հենց այդպես էլ վարվեցին ԱՄՆ-ի կենտրոնական հետախուզական վարչության տխրահռչակ չինովնիկները, որոնք վերջերս հրատարակած իրենց կեղծագրերում փորձեցին ցույց տալ, թե սովետական էկոնոմիկան իբր ավելի դանդաղ է զարգանում, քան ԱՄՆ-ի էկոնոմիկան։ Կեղծիքն այնքան կոպիտ էր ու ակներև, որ նույնիսկ բուրժուական մամուլը հերքեց այն, իսկ, «Նյու-Յորք հերալդ տրիբյուն» ամերիկյան թերթի արևմտաեվրոպական թղթակիցը դժկամությամբ գրեց. «Կենտրոնական հետախուզական վարչության զեկուցագիրը Ռուսաստանի դրության մասին անսպասելիորեն Եվրոպայում ունեցավ հակառակ ներգործություն»։

ՍՄԿԿ Կենտկոմի 1964 թվականի փետրվարյան պլենումում արտասանած իր ճառում Ն. Ս. Խրուշչովը փաստերի պերճախոս լեզվով մերկացրեց ամերիկյան զորպարտչական «հայտնագործությունը» և ընդգծեց, որ պարոն իմպերիալիստները վախենալով ռեալ իրականությունից դիմում են խաբեության ու մխիթարվում պատրանքներով։ Իրականությունն այն է, որ դանդաղ է զարգանում, տեղում դոփում կամ ետ է գնում հենց ԱՄՆ-ի տնտեսությունը։ Այսպես, եթե Սովետական Միության արդյունաբերական արտադրանքը վերջին տասը տարում աճել է 171 տոկոսով (2,7 անգամ), ապա ԱՄՆ-ում՝ միայն 36 տոկոսով։ Ինչ վերաբերում է նյութական արտադրության բոլոր ճյուղերի համախառն արտադրանքին, ապա այն ՍՍՌՄ-ում նույն ժամանակամիջոցում աճել է 127 տոկոսով (2,3 անգամ), իսկ ԱՄՆ-ում՝ միայն 33 տոկոսով։

Հանրագումարի բերելով Սովետական Միության



տնտեսական նվաճումները ընկեր Ն. Ս. Խրուշչովն ասաց. «Այժմ դրությունը միանգամայն այլ է։ Կապիտալիզմի աշխարհը, Ամերիկայի Միացյալ Նահանգներն արդեն տառացիորեն զգում են մեր շունչը, տեսնում են, որ սովետական արդյունաբերությունը մի շարք ճյուղերում հասնում է և նույնիսկ անցել է Ամերիկայի Միացյալ Նահանգներից»։

Այսպիսով, մեր երկիրն ընթանալով լենինյան ուղիով, մարդկության համար առաջինը հարթեց ոչ միայն սոցիալիզմի, այլև կոմունիզմի կառուցման ճանապարհը։ Դա մարքս-լենինյան ուսմունքի փայլուն հաղթանակն է, որը ոգեշնչում է աշխարհի բոլոր աշխատավորներին։

Կոմունիզմի հաղթանակի նկատմամբ պարտիայի գիտական կանխատեսումը և խոր վստահությունը, հիմնվում են հասարակության զարգացման օրենքների ճանաչողության վրա, սոցիալիստական սիստեմի առավելությունների ու գերազանցության վրա, մեր հայրենիքի վիթխարի նվաճումների ու պոտենցյալ հնարավորությունների վրա, առաջադրված պլանների ռեալության վրա, սովետական մեծագործ ժողովրդի հերոսական սխրագործության վրա։ «Պարտիան,— ասված է ՍՄԿԿ ծրագրում,— ելնում է հետևյալ մարքս-լենինյան դրույթից. ժողովուրդը պատմության կերտողն է, կոմունիզմի կառուցումը ժողովրդի ձեռքի, նրա եռանդի, նրա բանականության գործն է։ Կոմունիզմի հաղթանակը կախված է մարդկանցից, և կոմունիզմը մարդկանց համար է կառուցվում։ Յուրաքանչյուր սովետական մարդ իր աշխատանքով մոտեցնում է կոմունիզմի հաղթանակը։ Կոմունիստական շինարարության հաջողությունները առատություն և ուրախ կյանք են բերում բոլորին, էլ ավելի են բարձրացնում սովետական հայրենիքի հզորությունը, պատիվն ու փառքը»։

Կոմունիզմի կառուցման համար սովետական ժողովուրդը պայքարում է լուծելու իրար հետ անխզելիորեն կապված երեք հիմնական խնդիր. կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծում, կոմունիստական հարաբերությունների ձևավորում և նոր մարդու, կոմունիստական մարդու դաստիարակում։ Կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծումը մեր տնտեսական, սոցիալական ու կուլտուրական բոլոր խնդիրների ընդհանուր շղթայի վճռական օղակն է, ուստի և պարտիայի ու ժողովրդի գլխավոր խնդիրը։ Նրա իրակա-

նացման գործում խիստ կարևոր նշանակություն ունի մեծ քիմիայի զարգացումը։ Բնորոշ է, որ Վ. Ի. Լենինը դեռ սովետական իշխանության առաջին տարիներին առաջ քաշեց քիմիական արդյունաբերության ստեղծման ու զարգացման հարցը և նրա իսկ նախաձեռնությամբ արդեն 1917 թվականի հոկտեմբերին Ժողովրդական Տնտեսության Գերագույն Խորհրդում ստեղծվեց քիմիայի հատուկ բաժին։ Հավատարիմ լենինյան ցուցումներին մեր պարտիան այժմ բացառիկ ուշադրություն է դարձնում քիմիական արդյունաբերության զարգացմանը։

Կոմունիստական շինարարության նոր ու կարևոր էտապ բացեց ՍՄԿՊ Կենտկոմի 1963 թվականի դեկտեմբերյան պլենումը, որը հատկապես քննարկեց քիմիական արդյունաբերության զարգացման հարցը։ Ելնելով վերջին շրջանի պրակտիկայից, գիտության ու տեխնիկայի վիթխարի նվաճումներից, պարտիան ցույց տվեց, որ ներկայումս մեծ քիմիան չափազանց կարևոր տեղ է գրավում երկրի էկոնոմիկայի արագ զարգացման գործում, կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման ասպարեզում։ Ամենայն ուժով ընդգծելով քիմիայի դերը, ընկեր Ն. Ս. Խրուշչովն ասաց. Կոմունիզմը սովետական իշխանությունն է՝ պլյուս ամբողջ երկրի էլեկտրիֆիկացումը, պլյուս ժողովրդական տնտեսության քիմիացումը:

Հիրավի շատ մեծ են քիմիայի զարգացման հնարավորություններն ու հեռանկարները։ Այն ապահովում է արտադրողական ուժերի աննախընթաց վերելքը, արդյունաբերական ապրանքների ու գյուղատնտեսական մթերքների առատության ստեղծումը։ Ահա թե ինչու մեր պարտիան ու կառավարությունը մեծագույն ուշադրություն են դարձնում քիմիայի զարգացմանը. բավական է նշել, որ առաջիկա յոթ տարում քիմիական արդյունաբերության զարգացման և ժողովրդական տնտեսության առաջատար ճյուղերի քիմիացման կապիտալ ներդրումները կկազմեն 42 միլիարդ ռուբլի։ Դրանով մեր պարտիան, նրա լենինյան Կենտրոնական կոմիտեն մի նոր հարված հասցրին Ստալինի տնտեսական դոգմաներին, որոնք արգելակում էին ժողովրդական տնտեսության կառուցվածքի առաջադիմական փոփոխմանը և ընդհանրապես երկրի արագ զարգացմանը։ Պատահական չէ, որ անձի պաշտամունքի շրջանում քիմիան բավականաչափ չէր զար-



գանում, իսկ ամբողջ էկոնոմիկայի քիմիացման մասին խոսելն էլ ավելորդ էր։ Այդ լիովին վերաբերում է նաև գյուղատնտեսությանը, որը Ստալինի օրոք փաստորեն անուշադրության էր մատնված։

Կոմունիստական պարտիան վերջին տասնամյակում արմատական միջոցառումներ մշակեց գյուղատնտեսության զարգացման համար։ Կազմակերպչորեն ու գիտատեխնիկական տեսակետից ամրապնդվեցին կոլտնտեսությունները ու սովխոզները, յուրացվեցին բազմամիլիոն հեկտար հողային նոր զանգվածներ, համարյա կրկնապատկվեց հացահատիկի արտադրությունը, լըրջորեն բարելավվեց պարենային մյուս մթերքների արտադրությունը և այլն։ Այսպես, հանրային անասնապահության զարգացման, նրա ապրանքայնության բարձրացման հիման վրա մսի պետական գնումները 3,6 միլիոն տոննայից հասան 9,3 միլիոն տոննայի, կաթինը՝ 10,6 միլիոն տոննայից 28,5 միլիոն տոննայի։ Չնայած 1963 թվականը գյուղատնտեսության համար ծայրահեղորեն աննպաստ էր, այնուամենայնիվ սովետական մարդկանց անձնվեր աշխատանքով երկրում մթերվեց 2.735 միլիոն փութ հացահատիկ կամ 836 միլիոն փթով ավելի, քան 1953 թվականին, մթերվեց 41,4 միլիոն տոննա շաքարի ճակնդեղ կամ 1953 թվականի համեմատությամբ գրեթե 2 անգամ ավելի։ Հավաքվեց բոլոր տարիների համար ռեկորդային քանակությամբ բամբակ՝ 5 միլիոն 205 հազար տոննա։

Այդ բոլորով հանդերձ պարտիան ընդգծում է, որ կոմունիստական շինարարության համար պահանջվում է գյուղատնտեսության հետագա հզոր վերելք։ Այժմ առաջնահերթ խնդիր է հիմնովին ինտենսիվացնել գյուղատնտեսական արտադրությունը, որպեսզի սովետական մարդիկ լի ու լի բավարարեն իրենց մշտապես աճող պահանջները։ ՍՄԿՊ Կենտկոմի 1964 թվականի փետրվարյան պլենումը որոշելով գյուղատնտեսության ինտենսիվացման հիմնական ուղղությունները, կարևոր համարեց լայնորեն քիմիացնել հողագործությունն ու անասնապահությունը, խստորեն ավելացնել պարարտանյութերի արտադրությունը, ըստ ամենայնի զարգացնել ոռոգելի հողատարածությունը, արմատավորել կոմպլեքսային մեքենայացումը, գիտության նվաճումներն ու առաջավոր փորձը և այդ բոլորի հիման վրա հարաճուն վերելքով հասնել նրան, որ 1970 թվականին արտադրվի 14—16 միլիարդ փութ հացահատիկ, 20—

25 միլիոն տոննա միս, 115—135 միլիոն տոննա կաթ։

Ինչ խոսք, որ գյուղատնտեսության ինտենսիվացման կուրսը բարձր պահանջներ է ներկայացնում պարտիական, սովետական ու տնտեսական օրգաններին, սովետական բոլոր մարդկանց, որպեսզի նրանք իրենց ջանքերը կենտրոնացնեն արտադրության արմատական հարցերի լուծման վրա։

Տնտեսության հմուտ կառավարումը, նրա մշտական կատարելագործումը, աշխատանքի նյութական ու բարոյական ազդակների զարգացումը, բոլոր մարդկանց աշխատանքային լավագույն օրինակներով դաստիարակելը պարտիան համարում է դեպի կոմունիզմ առաջ շարժվելու միակ ճիշտ՝ լենինյան ուղին։ Սովետական ժողովուրդն անշեղորեն գնում է հենց այդ ուղիով և դրա լավագույն հաստատումն է· կոմունիստական աշխատանքի համար ծավալվող շարժումը, որ օրեցօր դառնում է ավելի մասսայական։

Կոմունիզմի կառուցման համար նյութատեխնիկական բազայի ստեղծման հետ միասին տեղի է ունենում կոմունիստական հարաբերությունների ձևավորում։ Վ. Ի. Լենինն իրեն հատուկ մտքի խորաթափանցությամբ ընդգծել է, որ «Արտադրողական ուժերի և կուլտուրայի առաջընթաց, վերընթաց զարգացման յուրաքանչյուր աստիճանի, որ կհաջողվի մեզ, պետք է ուղեկցի մեր սովետական սիստեմի կատարելագործումն ու վերակերտումը»։ (Երկեր, հ. 33, էջ 116)։ Հատկապես պետք է նշել այն, որ մեր երկրում սոցիալիզմի լիակատար ու վերջնական հաղթանակով և կոմունիզմի ծավալուն շինարարության փուլը թևակոխելով՝ պրոլետարիատի դիկտատուրան վերաճեց համաժողովրդական պետության. դա կարևորագույն ուղենիշ է սոցիալիստական պետականությունը կոմունիստական հասարակական ինքնավարության վերաճելու ճանապարհին։ Ստալինի անձի պաշտամունքի պսակազերծումը և նրա վնասակար հետևանքների վերացումը, պարտիական ու պետական շինարարության լենինյան նորմաների վերականգնումն ու զարգացումը, սոցիալիստական դեմոկրատիայի համակողմանի ծավալումն ու կատարելագործումը ապահովում են ժողովրդական լայն մասսաների ու հասարակական կազմակերպությունների ակտիվ մասնակցությունը երկրի կառավարմանը։

Կոմունիզմի կառուցումը բարդ պրոցես է, և նրա բաղկացուցիչ մասն է կազմում գաղափարական աշխա-



տանքը, նոր մարդու դաստիարակությունը։ Իրոք, կոմունիստական հասարակության կառուցումը պահանջում է ոչ միայն նյութական բարիքների առատություն, այլև մարդկանց հոգևոր մեծ հարստություն։ Սոցիալիզմը լայն հորիզոններ է բացում ժողովրդական տաղանդի ստեղծագործական աճի համար և գիտությունն ու կուլտուրան ամբողջովին ի սպաս դնում աշխատավոր մասսաների բարեկեցությանը։ Դեռ 1918 թվականին՝ Սովետների համառուսաստանյան 3-րդ համագումարում Լենինն ասաց. «Առաջ ամբողջ մարդկային խելքը, նրա ամբողջ հանճարն ստեղծագործում էր միմիայն նրա համար, որպեսզի մի կարգ մարդկանց տա տեխնիկայի ու կուլտուրայի բոլոր բարիքները, իսկ մյուսներին զրկի ամենաանհրաժեշտից՝ լուսավորությունից ու զարգացումից։ Իսկ այժմ տեխնիկայի բոլոր հրաշքները, կուլտուրայի բոլոր նվաճումները դառնալու են համաժողովրդական սեփականություն և այսուհետև մարդկային խելքն ու հանճարն էլ երբեք բռնության միջոցների, շահագործման միջոցների չեն վերածվի»։ (Երկեր, հ. 26, էջ 589—590)։

Աննախընթաց վերելք է ապրում նաև սովետական գիտությունն ու կուլտուրան։ Երբեմնի հետամնաց Ռուսաստանը դարձել է համաշխարհային կուլտուրայի մեծագույն օջախ, գիտական ու տեխնիկական աննախընթաց խիզախումների առաջնակարգ կենտրոն։ Տիեզերքի հետազոտման ասպարեզում ձեռք բերած նվաճումները, հսկա հիդրոէլեկտրակայանների կառուցումը, շինարարության ինդուստրիալ մեթոդների արմատավորումը, ատոմային էներգիայի խաղաղ օգտագործումը, ժողովրդական տնտեսության քիմիացման կուրսը և այլն, համոզիչ կերպով վկայում են, որ Սովետական Միությունը գտնվում է համաշխարհային գիտության ու տեխնիկայի զարգացման առաջատար դիրքերում։

Ակներև է, որ այստեղ ևս պերճախոս կերպով երևում է սոցիալիստական հասարակարգի գերազանցությունն ու առավելությունը կապիտալիզմի նկատմամբ։ Սովետական մեծ հայտնագործությունները հանդիսանում են մեր նոր հասարակարգի ստեղծման ու զարգացման օրինաչափ արդյունքը, նրա ուժի ու հզորության ակնառու դրսևորումը։ Այդ տեսնում են նույնիսկ մեր թշնամիները, ինչպես, օրինակ, ամերիկյան բանկիր Դոնալդ Դեվիդը, որը վկայակոչելով Սովետական Միությանը, ասում է. «Արբանյակի հետևից մենք տեսնում

ենք հրթիռ, իսկ հրթիռի հետևից՝ առաջավոր գիտությունն ու տեխնիկան։ Սակայն այդ բոլորի հետևում կա՝ ինչ-որ ավելի բան։ Դա մարդկային հաստատությունների սոցիալական սիստեմն է»։

Մեր երկրի տնտեսության, գիտության ու կուլտուրայի հզոր վերելքն անշեղորեն բարձրացնում է սովետական մարդկանց նյութական բարեկեցությունն ու կուլտուրական մակարդակը։ Կոմունիստական պարտիան և սովետական կառավարությունը լենինյան հոգատարությամբ են շրջապատել մեր երկրի քաղաքացիներին։ ՍՍՌՄ-ում սիստեմատիկաբար աճում է ազգային եկամուտը և այն ի սպաս է դրված աշխատավորության աճող պահանջների բավարարմանը։ Ոչ թե արտադրություն՝ արտադրության համար, այլ արտադրություն՝ մարդու համար. այս է մեր պարտիայի ու պետության գործունեության նշանաբանը։ Միայն 1963 թվականին ժողովրդական սպառման ապրանքների արտադրությունն աճել է 5 տոկոսով, և նոր բնակարաններ են ստացել 11 միլիոն մարդ։ Այժմ երեք մարդուց մեկը սովորում է, և միայն անցած տարում ժողովրդական տնտեսությունն ստացել է 840 հազար բարձրագույն ու միջնակարգ կրթությամբ մասնագետներ։

Մեր երկրում աշխատավորների անձնական եկամուտների աճման հետ միասին մեծանում են հասարակական ֆոնդերը, որոնց հաշվին բազմամիլիոն մարդիկ ստանում են կենսաթոշակ, ուսանողներն ու սովորողներն ապահովված են հանրակացարաններով ու թոշակով, երեխաները սովորում են գիշերօթիկ դպրոցներում, աշխատավորները հանգստանում են ու բուժվում սանատորիաներում և այլ առողջապահական հիմնարկներում, մայրերն ստանում են պետական նպաստ և այլն։

Լենինիզմի գաղափարների կենսահաստատ ուժը ցայտուն կերպով դրսևորվում է նաև կոմունիստական պարտիայի ազգային քաղաքականության մեջ։ Վ. Ի. Լենինը հանդիսացավ ազգային հարցի մարքսիստական թեորիայի ու ռևոլյուցիոն ծրագրի մշակողը։ Հոկտեմբերյան ռևոլյուցիան արմատականորեն լուծեց ազգային հարցը, և մեր երկրի բոլոր ժողովուրդները դարձան ազատ ու իրավահավասար։ Վ. Ի. Լենինի նախաձեռնությամբ ու ղեկավարությամբ ստեղծվեց ՍՍՌՄ, որպես մեր հայրենիքի բոլոր ժողովուրդների միասնական ու կամավոր ընտանիք։

Սովետական ժողովուրդների եղբայրական ընտա-



նիքում իր արժանավոր տեղը գտավ և ազգային վերածնունդ ապրեց նաև հայ ժողովուրդը, որը դարեր շարունակ գտնվել է պատմության դաժան քառուղիներում և կենաց ու մահու պայքար մղել օտար նվաճողների ու սեփական հարստահարիչների դեմ։ Ցարիզմի ու կապիտալիզմի պայմաններում հայ ժողովուրդը՝ Ռուսաստանի բոլոր ժողովուրդների հետ միասին, ռևոլյուցիոն պայքար է մղել հանուն սոցիալական ու ազգային ազատագրության։ Այդ պայքարը ղեկավարում էր մեծ Լենինի ստեղծած պարտիան, որի շարքերում աճել են նաև հայ ժողովրդի պանծալի զավակներ Ստ. Շահումյանը, Բ. Կնունյանցը, Ս. Սպանդարյանը, Ալ. Մյասնիկյանը, Ս. Տեր-Պետրոսյանը (Կամո), Մ. Մելիքյանը (Դեդուշկա), Ս. Հովսեփյանը, Ա. Ամիրյանը, Ս. Տեր-Գաբրիելյանը, Ս. Կասյանը, Գ. Աթարբեկյանը, Ալ. Բեկզադյանը, Հ. Հակոբյանը, Ա. Մռավյանը, Ա. Միկոյանը, Հ. Բաղրամյանը և շատ ուրիշներ։

Շուտով կարմիր Հոկտեմբերի արևը ճառագեց նաև հինավուրց հայոց լեռներում, և ցարական կայսրության երբեմնի հետամնաց «ծայրամաս» Հայաստանը, որը դաշնակցության տիրապետության ժամանակ բոլորովին ավերվել ու դարձել էր մահվան ու որբերի երկիր, լենինյան պարտիայի ղեկավարությամբ և ռուս ժողովրդի օգնությամբ ազատագրվեց տեղական ու օտարերկրյա կեղեքիչների արյունոտ լծից։ Սովետական իշխանության հաղթանակը հայ ժողովրդին փրկեց ֆիզիկական բնաջնջումից և նրա առաջ բացեց զարգացման լայն հեռանկարներ։ Երախտապարտ հայ ժողովուրդը, հայացքն ուղղած իր փրկարար Լենինին, ազատագրման պահին ողջույն ուղարկեց համաշխարհային ռևոլյուցիայի առաջնորդին, իսկ նա իր հերթին Հայաստանի Ռազմառևոլյուցիոն կոմիտեի նախագահ Ս. Կասյանի անունով տրված հեռագրով անմիջապես ողջունեց իմպերիալիզմի ճնշումից ազատագրված աշխատավորական Սովետական Հայաստանին։ Ի՞նչ էր ներկայացնում այն ժամանակ Հայաստանը։ Այդ մասին «Պրավդան» գրել է. «Հայաստանի ամենաարգավանդ հողերում ոչինչ չկար, բացի հրկիզված գյուղերից, բացի ավերված տներից... Հայաստանով մրրիկի նման անցան թուրք ինտերվենտները, հազարներով թափառում էին գաղթականները, քաղցն ու բծավոր տիֆը հնձում էին մարդկանց։ Արևից վառված աշխատավոր գյուղացու սիրասուն ձեռքից զրկված հայկական հողը չորա-

ցել էր և պտուղ չէր տալիս։ Պետք էր ձեռք առնել վճռական միջոցներ»։

Եվ, իրոք, այդպիսի միջոցներ ձեռք առնվեցին։ Վ. Ի. Լենինը հայրական հոգատարություն ցուցաբերեց դեպի բազմաչարչար հայ ժողովուրդը։ 1920 թվականի դեկտեմբերին նա, ընդունելով ՀՍՍՌ Ռևկոմի անդամներ Ս. Տեր-Գաբրիելյանին և Աս. Մռավյանին, ասաց. «Համաշխարհային հեղափոխության ֆրոնտներից մեկը անցնում է Հայաստանի վրայով և թեև մենք ինքներս դժվարին դրության մեջ ենք, բայց Հայաստանին կօգնենք ամեն կերպ»։ Այդպես էլ եղավ։ Սովետական իշխանության տարիներին բարգավաճեց ու ծաղկեց Հայաստանը և դարձավ մեր հզոր Հայրենիքի առաջավոր ինդուստրիայի ու զարգացած գյուղատնտեսության ռեսպուբլիկաներից մեկը։ Ռեսպուբլիկայի աշխատավորությունը մեծ խանդավառությամբ է կատարում ու գերակատարում 7-ամյա պլանի առաջադրանքները։ Այսպես, արդյունաբերության արտադրանքի ծավալը 7-ամյակի 5 տարում աճել է 67,6 տոկոսով՝ նախատեսված 64,6 տոկոսի դիմաց։ Հատկապես արագ են զարգացել ժողովրդական տնտեսության այնպիսի առաջատար ճյուղեր, ինչպիսին են քիմիան, գունավոր մետալուրգիան, մեքենաշինությունն ու գործիքաշինությունը։ Անցած տարիներում յուրացվել է արդյունաբերական արտադրանքի ավելի քան 500 տեսակ։ Այժմ Սովետական Հայաստանի մարկայով ապրանքներ են արտահանվում աշխարհի 57 երկրներ։ Լուրջ հաջողություններ են ձեռք բերվել նաև գյուղատնտեսության ասպարեզում, որը ՍՄԿՊ Կենտկոմի դեկտեմբերյան և փետրվարյան պլենումների որոշումներից հետո գտնվում է նոր վերելքի նախօրյակին։

Ժողովրդական տնտեսության հետ միասին ծաղկում ու բարգավաճում է Սովետական Հայաստանի կուլտուրան։ Մեր ռեսպուբլիկայի գիտնականները իրենց ավանդն են մտցնում սովետական ու համաշխարհային կուլտուրայի և գիտության զարգացման մեջ։

Հոկտեմբերյան ռևոլյուցիայի ծնունդ Սովետական Հայաստանի արևավառ կուրծքը զարդարում է նրա ազատարարի՝ Լենինի շքանշանը, որպես հավերժական ազատության ու երջանկության խորհրդանիշ։

Սովետական Հայաստանը մեր երկրի ժողովուրդների համերաշխ ընտանիքում ակտիվորեն մասնակ-



ցում է կոմունիստական շինարարությանը և գնում դեպի նորանոր հաղթանակներ։

Կոմունիզմի ծավալուն շինարարությունը նոր էտապ է նաև ազգային հարաբերությունների բնագավառում։ Այն բնութագրվում է միմյանց հետ փոխադարձ կապված երկու առաջադիմական տենդենցներով՝ սոցիալիստական ազգերի հետագա բուռն զարգացմամբ և նրանց ավելի սերտ մերձեցմամբ։ ՍՍՌՄ ժողովուրդների բարեկամությունը մեր մեծագույն նվաճումն է և սովետական պետության անսասանության հիմքը։

Սովետական բազմազգ ժողովրդի ավանգարդը և ուղղություն տվող ուժը Լենինի ստեղծած ու կոփած կոմունիստական պարտիան է, որն անխզելիորեն կապված է աշխատավոր մասսաների հետ։ Կոմունիստական պարտիայի քաղաքականությունը բխում է մեր երկրի բոլոր ժողովուրդների արմատական շահերից և հանդիսանում է սովետական կարգերի կենսական հիմքը։ Ելնելով Լենինի պատգամներից՝ մեր փառապանծ պարտիան անընդհատ ամրապնդում է իր շարքերի միասնությունը և ուժեղացնում կապը մասսաների հետ։

Վ. Ի. Լենինը ցույց է տվել, որ սոցիալիզմի հաղթանակը մեկ երկրում ինքնաբավ մեծություն չէ։ Պատմության օրինաչափ զարգացմամբ բոլոր երկրների ժողովուրդները պետք է թոթափեն վարձու ստրկության շղթաները և կանգնեն սոցիալիստական ու ազգային ազատության ուղու վրա, կառուցեն կոմունիստական հասարակություն։

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ ռևոլյուցիայից հետո անցած պատմական ժամանակաշրջանում կապիտալիզմը նոր հարվածներ ստացավ և ձևավորվեց սոցիալիզմի համաշխարհային սիստեմը, որը դարձել է մարդկության զարգացման վճռական գործոնը, խաղաղության պատվարն ամբողջ աշխարհում։

Իմպերիալիզմի լագերին լուրջ հարված հասցրեց նաև նրա գաղութային սիստեմի քայքայումը։ Այդ պրոցեսը անդառնալիորեն մոտենում է իր ավարտմանը։ Եթե սովետական իշխանության հաստատման պահին աշխարհի բնակչության համարյա 70 տոկոսը գտնվում էր գաղութային ու կախյալ երկրներում, ապա այժմ մնացել է միայն 1,5 տոկոսը։

Աշխարհի ռևոլյուցիոն վերափոխման կազմակեր-

պիչներն ու ղեկավարները կոմունիստական պարտիաներն են, որոնք այժմ գոյություն ունեն համարյա բոլոր երկրներում և համախմբում են ավելի քան 40 միլիոն մարդ։

Միջազգային կոմունիստական շարժման առաջամարտիկը Լենինի ստեղծած ու ղեկավարած կոմունիստական պարտիան է, որի պատմությունը ուսուցման մեծագույն դպրոց է աշխարհի բոլոր կոմունիստների համար։ Մարքսիզմ-լենինիզմի անհաղթ գաղափարներով զինված կոմունիստական ու բանվորական պարտիաները մշտապես ամրապնդում են իրենց միասնությունը և անհաշտ պայքար մղում ռևիզիոնիզմի, աջ ու «ձախ» օպորտունիզմի, դոգմատիզմի ու աղանդավորության, նացիոնալիզմի, բուրժուական գաղափարախոսության դեմ։

Սովետական իշխանությունը ծնվեց Լենինի կողմից գրված Խաղաղության դեկրետով և իր գոյության ամբողջ ժամանակաշրջանում հետևողականորեն իրականացրել է խաղաղասիրական քաղաքականություն։ Դա բխում է մեր պետության բնույթից, նրա բանվորագյուղացիական էությունից։ Այսպիսով, Լենինի գլխավորած սովետական իշխանությունն էր, որն առաջին անգամ պատմության մեջ խաղաղության քաղաքականությունը դարձրեց պետական քաղաքականություն։ Հավատարիմ լենինյան սկզբունքներին, Սովետական Միությունը ներկայումս էլ վարում է խաղաղասիրական քաղաքականություն, տարբեր սոցիալական սիստեմներ ունեցող երկրների խաղաղ գոյակցության, ժողովուրդների անվտանգության ու համագործակցության քաղաքականություն, որը տալիս է հիանալի արդյունքներ։ 1963 թվականին կնքվեց Մոսկովյան պայմանագիրը՝ մթնոլորտում, տիեզերական տարածության մեջ և ջրում ատոմային փորձարկումների վերացման մասին, ՄԱԿ-ում ձեռք բերվեց համաձայնություն՝ Երկրի շուրջն ուղեծիր դուրս չբերել միջուկային զենք կրող որևէ օբյեկտ։ Խաղաղության գործում նոր ավանդ է ՍՍՌՄ Մինիստրների սովետի նախագահ Ն. Ս. Խրուշչովի ուղերձը աշխարհի բոլոր երկրների ղեկավարներին՝ տերիտորիալ վիճելի հարցերը լուծել խաղաղ բանակցությունների միջոցով։

Սովետական Միության խաղաղասիրական բոլոր առաջարկները ստանում են սոցիալիստական երկրների և աշխարհի ազատասեր ժողովուրդների համակրանքն ու պաշտպանությունը, բայց իմպերիալիզմի լագերը՝ ԱՄՆ-ի գլխավորությամբ ամեն կերպ փորձում է ձախողել խաղաղության ապահովման գործը։ Դա բխում է իմպերիալիզմի բուն էությունից, մոնոպոլիստական կապիտալի ձգտումից՝ պատերազմի միջոցով նոր գերշահույթներ ստանալու ձգտումից։ Սակայն, ինչպես նշել է Լենինը, այլևս ոչ մի բան չի կարող օգնել իր զենիթն անցած իմպերիալիզմին։

Իհարկե, մարքսիզմ-լենինիզմի գաղափարներով զինված միջազգային կոմունիստական շարժման ուղին հարթ չէ, և նա հաղթահարում է աներևակայելի դժվարություններ։ Այս շարժման գլխավոր թշնամին կապիտալիզմն է, իմպերիալիզմը։ Եթե 1871 թվականին Փարիզի քաղաքային խորհրդարանի վրա միայն ժամանակավորապես ծածանվեց կոմունայի կարմիր դրոշը և, այնուամենայնիվ, Մարքսի արտահայտությամբ, հին աշխարհը «կատաղությունից կծկվեց», ապա այժմ, երբ սոցիալիզմի հաղթական դրոշը հաստատակամորեն փողփողում է երկրագնդի վիթխարի տարածության վրա, զառամյալ իմպերիալիզմը ավելի է գազազում։ Սակայն նրան ոչինչ չի օգնի։ Կապիտալիզմը միայն անցյալ ունի՝ առանց ապագայի։ Ապագան պատկանում է միայն և միայն կոմունիզմին։ Պատմական ամեն մի ժամանակաշրջան նոր հաղթանակներ է բերել լենինիզմին, այդպիսին կլինի նաև վերահաս ժամանակաշրջանը։ Լենինիզմի գաղափարները ապրում ու հաղթանակում են մեր հայրենիքի կոմունիստական սխրագործությունների մեջ, ժողովրդական դեմոկրատիայի երկրների սոցիալիստական շինարարության ծավալման մեջ, կապիտալիստական երկրների աշխատավոր մասսաների ռևոլյուցիոն պայքարի և գաղութային ու կախյալ երկրների ազգային-ազատագրական շարժումների մեջ։ Այժմ, քան երբևիցե «եռում է պատմության կաթսան» և համաշխարհային զարգացման կողմնացույցն ուղղված է դեպի կոմունիզմ։ Այն կհաղթանակի ամբողջ աշխարհում, և սովետահայ ականավոր բանաստեղծ Եղիշե Չարենցի մարգարեական արտահայտությամբ, դեռ կգա՛ Իլյիչը, որպեսզի մտնի համաշխարհային Սովնարկոմ։

---

# ԼԵՆԻՆԸ ՈՐՊԵՍ ԱԳԻՏԱՏՈՐ

Ն. Կ. ԿՐՈՒՊՍԿԱՅԱ

«Մեր ուսմունքը դոգմա չէ, այլ գործողության ուղեցույց»,— ասել են Մարքսը և Էնգելսը: Լենինը հաճախ էր կրկնում այս բառերը: Նրա ամբողջ գործունեությունն ուղղված էր այն նպատակին, որ մարքսիզմը ոչ թե խոսքերով, այլ գործով դարձվի բանվոր դասակարգի ամենալայն մասսաների գործողության ուղեցույց:

Ագիտացիան մասսաների ակտիվացման մեթոդ է, որը կիրառում են ոչ միայն մարքսիստները. բուրժուազիան հնուց ի վեր ունեցել է ագիտացիայի հսկայական փորձ: Բայց ագիտացիաները տարբեր են լինում: Միայն «...թեորետիկական ճիշտ լուծումն է կայուն հաջողություն ապահովում ագիտացիայի մեջ»,—ասել է Լենինը պարտիայի II համագումարում:

Թեորիայի թերագնահատումը, նրա նշանակության նսեմացումը, «...միանգամայն անկախ նրանից, այդ բանը ցանկանում է նսեմացնողը թե ոչ, նշանակում է «բանվոր դասակարգի վրա բուրժուական գաղափարախոսության ազդեցության ուժեղացում»: Այսպիսով, գլխավորը, ինչին նշանակություն էր տալիս Լենինը ագիտացիայի բովանդակությունն է:

Նա պայքարում էր այն բանի դեմ, որ ագիտացիան վերածվի միայն կոչերի, և պահանջում-էր, որ այն կապված լինի բացատրական աշխատանքի հետ:

Լենինը ագիտացիայի ուժը տեսնում էր պարզ, ձևով հասարակ, ճիշտ դրված բացատրական աշխատանքի մեջ: «...Պետք է կարողանան խոսել պարզ ու հասարակ՝ մասսային մատչելի լեզվով, վճռականապես դեն նետելով դժվար հասկանալի տերմինների, անգիր արված, պատրաստի, բայց մասսային դեռևս անհասկանալի օտար բառերի, նրան անծանոթ լոզունգների, բնորոշումների, եզրակացությունների ծանր հրետանին»,— գրել է Լենինը 1906 թվականին «Սոցիալ-դեմոկրատիան և ընտրական համաձայնությունները» հոդվածում:

Ագիտատորը, սովորեցրել է Լենինը, ժողովրդական տրիբուն է, որը կարողանում է խոսել մասսայի հետ, նրան ոգեշնչել իր խանդավառությամբ, վերցնել ցայտուն, խոսող փաստեր: Այդպիսի ժողովրդական տրիբունի ճառը արձագանք է գտնում մասսաների մեջ, այն պաշտպանվում է ռևոլյուցիոն դասակարգի եռան-



դով: Այդպիսի ագիտատոր, այդպիսի ժողովրդական տրիբուն էր ինքը՝ Լենինը:

1905 թվականի ամռանը «Սոցիալ դեմոկրատիայի երկու տակտիկան դեմոկրատական ռևոլյուցիայի մեջ» բրոշյուրում Լենինը նշել է, որ «Ռուսաստանի սոցիալ-դեմոկրատական բանվորական պարտիայի ամբողջ աշխատանքն արդեն լիովին կաղապարվել է ամուր, անփոփոխելի շրջանակներում, որոնք անպայման ապահովում են ծանրության կենտրոնի հաստատումը պրոպագանդայի և ագիտացիայի, թռուցիկների ու մասսովկաների, թերթերի ու բրոշյուրների տարածման, տնտեսական պայքարին օժանդակելու և նրա լոզունգները վերցնելու մեջ»:

Բայց այն, որ ագիտացիան արդեն մտել է աշխատանքի պրակտիկայի մեջ, կաղապարվել է միանգամայն որոշակի շրջանակներում, չի նշանակում, թե Լենինը թեկուզ մի ռոպեով թույլ է տվել նրա շաբլոնացումը:

Նա պահանջում էր կարողանալ տարբեր ձևերով մոտենալ բնակչության տարբեր խավերին: «Ռեսպուբլիկայի մասին միշտ պետք է խոսի ամեն մի ս.-դ., որը, ուր ուզում է լինի, քաղաքական ճառ է արտասանում: Բայց պետք է կարողանալ խոսել ռեսպուբլիկայի մասին. նրա մասին չի կարելի միատեսակ խոսել գործարանային միտինգում ու կազակական գյուղում, ուսանողական ժողովում ու գյուղացիական խրճիթում, III դումայի ամբիոնից ու արտասահմանյան օրգանի էջերից: Յուրաքանչյուր պրոպագանդիստի ու յուրաքանչյուր ագիտատորի հմտությունը հենց այն է, որպեսզի լավագույն ձևով ներգործի տվյալ լսարանի վրա, նրա համար հայտնի ճշմարտությունը դարձնելով ըստ հնարավորին ավելի համոզիչ, ըստ հնարավորին ավելի դյուրին յուրացվող, հնարավորին ավելի ակնբախ ու հաստատ տպավորվող»,— գրել է Իլյիչը 1911 թվականի դեկտեմբերին: Իհարկե, դա չի նշանակում, թե ոմանց հարկավոր է մի բան ասել, իսկ ուրիշներին՝ այլ բան: Հարցը միայն մոտեցման մեջ է:

Լենինը միշտ պնդել է, որ մասսային հմտորեն մոտենալու համար անհրաժեշտ է նրան ուսումնասիրել: Ինքը անձամբ անդուլ կերպով ուսումնասիրում էր մասսային, կարողանում էր ունկնդրել մասսային, կարողանում էր հասկանալ այն, ինչ ասում է մասսան, ըմ-

բռնել այն բանի էությունը, ինչ ձգտում է արտահայտել բանվորը, գյուղացին։

Սովորել մոտեցում ունենալ մասսաների նկատմամբ՝ սրա մեջ էր Իլյիչը տեսնում պարտիայի նախապատրաստումը պրոլետարիատի դիկտատուրային։ Այդ բանը նա ինքն ամբողջ կյանքում սովորում էր առանձնահատուկ հաստատակամությամբ։

Ճիշտ այդպես էլ Լենինը ոչ մի շաբլոնացում թույլ չէր տալիս այն լոզունգների ընտրության ժամանակ, որոնց շուրջը ագիտացիա էր տարվում։ Նա հատուկ նշանակություն էր տալիս լոզունգների ընտրության գործին։ 1918 թվականի նոյեմբերին պարտիական աշխատողների ժողովում զեկուցելով մանր բուրժուական պարտիաների մասին, Վլադիմիր Իլյիչը նշել է, որ «...յուրաքանչյուր լոզունգ ընդունակություն է ստանում ամրանալու ավելի, քան պետք է»։ Իլյիչը ագիտացիայի բնագավառում բացառիկ նշանակություն էր տալիս ճկունությանը, յուրաքանչյուր փուլում փաստերի շղթայից հենց այն օղակն ընտրելու կարողությանը, որից անհրաժեշտ է կառչել՝ դուրս քաշելու համար ամբողջ շղթան, լուսաբանելու համար երևույթների ամբողջ գումարը։

Իր ամբողջ գործունեության ընթացքում պարտիան, հավատարիմ մնալով իր հիմնական սկզբունքներին, ստիպված է եղել շարունակ լոզունգները փոխել պայմանների փոփոխությանը համեմատ։ Իսկ աշխատանքի պայմանները փոխվել են միշտ։

Մոմենտի գնահատականին մարքսիստորեն մոտենալու, իրադարձությունները բոլոր կապակցությունների և կապերի մեջ, դրանց զարգացման մեջ վերցնելու կարողությունը, այն բանը որոշելու կարողությունը, թե տվյալ պահին բանվոր դասակարգին ինչ է պետք հաղթանակի համար, մի խոսքով՝ մոմենտի գնահատականի նկատմամբ դիալեկտիկական, մարքսիստական մոտեցումը պարտիային զինեց լոզունգները ճիշտ ընտրելու, անհրաժեշտ օղակից բռնելու կարողությամբ։ Լենինը հատկապես շատ բան է արել յուրաքանչյուր փուլում պարտիայի խնդիրները վերլուծելու գործում։ Լոզունգների ճիշտ ընտրությունը այն է, ինչ թեորիան շաղկապել է պրակտիկայի հետ, ինչ ագիտացիան դարձրել է հատկապես հաջող։ Հոկտեմբերի նախօրյակին բոլշևիկների կողմից առաջ քաշված խաղաղության լոզունգը, հողի մասին լոզունգը այնպիսի լոզունգներ էին,



որոնք ապահովեցին բանվոր դասակարգի հաղթանակը, որոնք խորապես հուզում էին գյուղացիների ու զինվորների ամբողջ մասսային։ Լենինը ռևոլյուցիոն ֆրազ էր անվանում այն լոզունգները, որոնք, չնայած շատ վառ են, բայց խարսխված չեն իրերի իսկական դրության հաշվառման վրա։

Երբ 1918 թվականին դրվեց Գերմանիայի հետ հաշտության շատ ծանր պայմաններն ընդունելու անհրաժեշտության հարցը և ոմանք հանդես եկան հաշտության պայմանագիր կնքելու դեմ ու խոսում էին ռևոլյուցիոն պատերազմի անհրաժեշտության մասին, Լենինը նրանց դեմ հանդես եկավ «Ռևոլյուցիոն ֆրազի մասին» հոդվածով։

«Ռևոլյուցիոն ֆրազը ռևոլյուցիոն լոզունգների կրկնումն է՝ առանց հաշվի առնելու, տեղի ունեցող իրադարձությունների տվյալ բեկման, իրերի տվյալ դրության օբյեկտիվ հանգամանքները։ Հիանալի, հրապուրիչ, արբեցուցիչ լոզունգներ,— բայց նրանց տակ հող չկա,— ահա ռևոլյուցիոն ֆրազի էությունը»,— գրել է Լենինը։ «Ով չի ուզում իրեն օրորել խոսքերով, դեկլամացիայով, բացականչություններով,— շարունակում է Լենինը,— նա չի կարող չտեսնել, որ 1918 թվականի փետրվարին ռևոլյուցիոն պատերազմի «լոզունգը» ամենադատարկ ֆրազ է, որի տակ ոչ մի իրական, օբյեկտիվ բան չկա։ Զգացմունք, ցանկություն, զայրույթ, վրդովմունք— ահա այդ լոզունգի միակ բովանդակությունը տվյալ մոմենտին։ Իսկ միմիայն հենց այդպիսի բովանդակություն ունեցող լոզունգը ռևոլյուցիոն ֆրազ է կոչվում»։

«Քաղաքական ագիտացիայի աշխատանքը երբեք զուր չի կորչում,— գրել է Իլյիչը 1908 թվականին՝ ռեակցիայի եռուն շրջանում։— Դրա հաջողությունը չափվում է ոչ միայն նրանով, թե, հաջողվե՞լ է արդյոք մեզ իսկույն և միանգամից մեծամասնության կամ կոորդինացված քաղաքական ելույթի համաձայնության հասնել։ Հնարավոր է, որ մենք միանգամից չհասնենք դրան. հենց նրա համար էլ մենք կազմակերպված պրոլետարական պարտիա ենք, որ չշփոթվենք ժամանակավոր անհաջողություններից, այլ համառ, անշեղ, կայուն կերպով տանենք մեր աշխատանքը թեկուզ ամենադժվարին պայմաններում»։

Կյանքը ցույց տվեց, թե որքան իրավացի էր Իլյիչը։ 1912 թվականին սկսվեց ռևոլյուցիոն վերելքը և վերա-

կենդանացան 1905 թվականի տրադիցիաները։ Դրանք բանվորներին օգնեցին ի պատասխան Լենայի իրադարձությունների անցկացնել վիթխարի մասսայական գործադուլ։ Բանվորներն անմիջապես ոտքի հանեցին, աշխուժացրին այդ տրադիցիան։

Մասսայական ռևոլյուցիոն գործադուլը Լենինն անվանեց ագիտացիայի պրոլետարական մեթոդ։

«Առաջին անգամ ռուսական ռևոլյուցիան,— գրել է նա 1912 թվականի հունիսին,— լայն չափերով ծավալեց ագիտացիայի, մասսաների թափահարման, համախմբման և նրանց պայքարի ասպարեզ ներգրավելու այդ պրոլետարական մեթոդը։ Եվ այժմ պրոլետարիատը նորից ու էլ ավելի հաստատակամ կիրառում է այդ մեթոդը։ Աշխարհում ոչ մի ուժ չէր կարող իրագործել այն, ինչ իրագործում է այդ մեթոդով պրոլետարիատի ռևոլյուցիոն ավանգարդը։ Վիթխարի տարածության վրա ցրված, մասնատված, իշխանությունների, ոստիկանության, լրտեսների բազմությամբ ճզմված, իրավազուրկ, խավար, «վնասակար ազդեցություններից» պատնեշված 150 միլիոնանոց բնակչություն ունեցող այդ հսկայական երկիրը ամբողջովին սկսել է խմորվել։ Ե՛վ բանվորների, և՛ գյուղացիների ամենահետամնաց շերտերն ուղղակի և անուղղակի շփման մեջ են մտնում գործադուլավորների հետ։ Միանգամից ասպարեզ են գալիս հարյուր-հազարավոր ռևոլյուցիոն ագիտատորներ, որոնց ազդեցությունն անսահմանորեն ուժեղանում է նրանով, որ նրանք անխզելիորեն կապված են ստորին խավերի, մասսայի հետ, մնում են նրանց շարքերում, պայքարում են ամեն մի բանվորական ընտանիքի ամենակենսական կարիքների համար, կենսական տնտեսական կարիքների համար մղվող այդ անմիջական պայքարին միացնում են քաղաքական բողոքը և պայքարը միապետության դեմ։ Որովհետև կոնտրռևոլյուցիան միլիոնավոր և տասնյակ-միլիոնավոր մարդկանց մեջ մտցրել է սուր ատելություն դեպի միապետությունը, նրա դերն ըմբռնելու սաղմեր, իսկ այժմ մայրաքաղաքի առաջավոր բանվորների լոզունգը՝ կեցցե՛ դեմոկրատական ռեսպուբլիկան, հազարավոր խողովակներով գնում է ու գնում, յուրաքանչյուր գործադուլի հետևից, դեպի հետամնաց խավերը, խուլ գավառները, «ժողովրդի» մեջ, «Ռուսաստանի խորքը»։

«Մասսաները համոզվում են փաստերով, հավատում են ոչ թե խոսքերի, այլ գործերի»։ Հանդես գալով սո-



վետների III համագումարում, Լենինը ասել է. «Մենք գիտենք, որ ժողովրդական մասսաներում այժմ բարձրանում է ուրիշ ձայն. նրանք ասում են իրենց՝ այժմ չպետք է վախենալ հրացանավոր մարդուց, որովհետև նա պաշտպանում է աշխատավորներին և անողոք կլինի շահագործողների տիրապետության ճնշման գործում։ Ահա թե ինչ է զգացել ժողովուրդը, և ահա թե ինչու այն ագիտացիան, որ մղում են հասարակ, անուսում մարդիկ, երբ նրանք պատմում են այն մասին, որ կարմիրգվարդիականներն իրենց ամբողջ հզորությունն ուղղում են շահագործողների դեմ,— ահա թե ինչու այդ ագիտացիան անհաղթելի է»։

Քաղաքացիական պատերազմի ժամանակ ագիտացիան ստացավ արտասովոր լայն թափ։ Այն ժամանակ Համառուսաստանյան Կենտգործկոմին կից ստեղծվեցին ագիտացիոն գնացքներ ու նավեր։ Վլադիմիր Իլյիչը դրանց մեծ ուշադրություն էր դարձնում, ցուցումներ էր տալիս մարդկանց ընտրության, ագիտացիայի բնույթի, կատարված աշխատանքի հաշվառման ուղղությամբ։

Իլյիչը ագիտացիան սերտորեն կապում էր ոչ միայն պրոպագանդայի, այլև կազմակերպման հետ։ Ագիտացիան մասսաներին օգնում է կազմակերպվել,— այդ մասին Լենինը խոսել է հենց սկզբից,— նրանց համախմբում է, օգնում է համերաշխորեն գործել։ Ագիտացիան կազմակերպող հսկայական նշանակություն ունեցավ ռևոլյուցիայի պահին, այն ոչ պակաս նշանակություն ունի նաև սոցիալիզմի կառուցման գործում։

Ագիտացիայի ձևերը փոխվում են, բայց ագիտացիան շարունակում է կազմակերպող նշանակություն ունենալ՝ հենց ագիտացիոն գործով, աշխատանքով, օրինակով։

Վլադիմիր Իլյիչը հատուկ նշանակություն էր տալիս օրինակով կատարվող ագիտացիային։ «Սովետական իշխանության հերթական խնդիրները» հոդվածում, որը գրվել է 1918 թվականի ապրիլին, Իլյիչն ընդգծում էր այն ագիտացիոն նշանակության մասին, որ օրինակն ստանում է սովետական իշխանության օրոք։ «Արտադրության կապիտալիստական եղանակի պայմաններում, առանձին օրինակի, ասենք, որևէ արտադրական արտելի օրինակի, նշանակությունն անխուսափելիորեն ծայր աստիճան սահմանափակված էր, և միայն մանրբուրժուական պատրանքը կարող էր երազել բարեգոր-

ծական հիմնարկների օրինակների ազդեցությամբ կապիտալիզմն «ուղղելու» մասին։ Քաղաքական իշխանությունը պրոլետարիատի ձեռքն անցնելուց հետո, շահագործողներին ունեզրկելուց հետո, բանն արմատապես փոխվում է և, համաձայն այն բանի, ինչ բազմիցս մատնանշել են ականավոր սոցիալիստները, օրինակի ուժն առաջին անգամն է, որ հնարավորություն է ստանում իր մասսայական ազդեցությունը ցույց տալու»։

Շատ մեծ նշանակություն տալով օրինակով կատարվող ագիտացիային, Իլյիչը հսկայական ագիտացիոն նշանակություն էր տալիս սոցիալիստական մրցությանը:

Երբ քաղաքացիական պատերազմն ավարտվելու վրա էր, Իլյիչն ընդգծում էր, որ անհրաժեշտ է պրոպագանդան ու ագիտացիան փոխադրել նոր ռելսերի վրա՝ այն որքան կարելի է սերտորեն կապելով սոցիալիստական շինարարության և հատկապես տնտեսական շինարարության խնդիրների, պլանային տնտեսության խնդիրների հետ։

«Հին տիպի պրոպագանդան,— ասել է Լենինը,— պատմում է, օրինակներ է տալիս, թե ի՛նչ բան է կոմունիզմը։ Բայց այդ հին պրոպագանդան ոչ մի բանի պետք չէ, որովհետև հարկավոր է գործնականորեն ցույց տալ, թե ինչպե՛ս պետք է կառուցել սոցիալիզմ։ Ամբողջ պրոպագանդան պետք է կառուցվի տնտեսական շինարարության քաղաքական փորձի վրա... Մեր գլխավոր քաղաքականությունն այժմ պետք է լինի պետության տնտեսական շինարարությունը... Եվ դրա վրա պետք է կառուցվի ամբողջ ագիտացիան ու ամբողջ պրոպագանդան...

Յուրաքանչյուր ագիտատոր պետք է լինի պետական ղեկավար, բոլոր գյուղացիների ու բանվորների ղեկավարը տնտեսական շինարարության գործում»։

Համառուսաստանյան Կենտգործկոմի ագիտգնացքներից նա պահանջում էր ուժեղացնել գնացքների ու նավերի աշխատանքի տնտեսական ու գործնական մասը՝ դրանց քաղբաժինների մեջ մտցնելով գյուղատնտեսների, տեխնիկների, ընտրելով տեխնիկական գրականություն, համապատասխան բովանդակության կինոժապավեններ, պահանջում էր կինոժապավեններ պատրաստել գյուղատնտեսական և արդյունաբերական թեմաներով, համապատասխան ֆիլմեր պատվիրել արտասահմանում։



Քաղլուսավարչություններից նա պահանջում էր լայնորեն ծավալել արտադրական պրոպագանդան, այդ հարցի առթիվ թեզիսներ էր գրում, պահանջում էր ուսումնասիրել արտասահմանի, հատկապես Ամերիկայի արտադրական պրոպագանդայի և ագիտացիայի ձևերը, մեզ մոտ այդ մեթոդների կիրառման փորձը։ ԳՈԷԼՌՈ-ի ղեկուցման կապակցությամբ նա պահանջում էր էլեկտրիֆիկացման գործին ներգրավել բանվորների ամենալայն մասսաներին, էլեկտրիֆիկացման միասնական պլանի համար կատարվող ամբողջ ագիտացիային տալ քաղաքական բնույթ, պահանջում էր ընդլայնել բանվորների քաղաքական մտահորիզոնը, առանց որի չի կարելի հասկանալ պլանային տնտեսության էությունը։

Լենինը կրքոտությամբ երազում էր այն մասին, որ սովետների երկիրը դառնա յուրատեսակ ագիտկետ, որը գործի օրինակով, ցուցադրումով, դառնա մի ջահ, որը լուսավորի ամբողջ աշխարհի պրոլետարիատի ուղին։



# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԽՄԲԵՐԻ ՀԱՄԱՐ

## 1. Վ. Ի. Լենինի հիշատակի օրը

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վլադիմիր Իլյիչ Լենին, *կենսագրություն, Հայպետհրատ, 1961։*

*Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ—* Լենինյան պարտիան կոմունիզմի հաղթանակի համար մղվող պայքարի կազմակերպիչն է, *տպագրված «ՍՄԿՊ XXII համագումարի նյութերը» գրքում, էջ 115—157, Հայպետհրատ, 1962։*

*Մ. Ի. ԿԱԼԻՆԻՆ—* Լենինը և գյուղացիությունը, *տպագրված «Հիշողություններ Վ. Ի. Լենինի մասին» ժողովածուի 2-րդ հատորում, Հայպետհրատ, 1958։*

*Ս. Մ. ԿԻՐՈՎ—* Լենինը և բանվոր դասակարգը, *տպագրված «Հիշողություններ Վ. Ի. Լենինի մասին» ժողովածուի 2-րդ հատորում, Հայպետհրատ, 1958։*

## 2. Լենինյան գաղափարների մեծ հաղթանակը

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Սովետական Միության կոմունիստական պարտիայի ծրագիրը:

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Լենինյան ծրագիրը մարմնավորված է կյանքում, *տպագրված «ՍՄԿՊ XXII համագումարի նյութերը» գրքում, էջ 159—166, Հայպետհրատ, 1962:*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Երկրի էլեկտրիֆիկացման գաղափարների կենսագործումը կոմունիզմի հաղթանակի ճշմարիտ ուղին է. *առանձին բրոշյուր, Հայպետհրատ, 1958:*

Բ. Ն. ՊՈՆՈՄԱՐՅՈՎ— Լենինիզմը մեր դրոշը և ամենահաղթ զենքն է, *զեկուցում տրված Մոսկվայի հանդիսավոր նիստում, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի ապրիլի 23-ի համարում:*

Ա. ՄՈՏԻԼՅՈՎ— Որքան կուրախանար Իլյիչը, *զրույց Սովետական Միության ժողովրդական տնտեսության հաջողությունների մասին, տպագրված «Ագիտատորի բլոկնոտ»-ի 1964 թվականի 2-րդ համարում:*

## 3. Վ. Ի. Լենինը կոմունիստական պարտիայի ստեղծողն է և առաջնորդը

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Սովետական Միության կոմունիստական պարտիայի 50 տարին (1903—1953):

Հիշողություններ Վ. Ի. Լենինի մասին, *առաջին և երկրորդ հատորներ, Հայպետհրատ, 1958:*

Հանուն նոր տիպի պրոլետարական պարտիայի (1900—1904), *տպագրված «Վլադիմիր Իլյիչ Լենին» (կենսագրություն) գրքի չորրորդ գլխում, էջ 96—153, Հայպետհրատ, 1961:*

Սովետական Միության կոմունիստական պարտիայի ծրագիրը:

## 4. Վ. Ի. Լենինը հայ ժողովրդի ազատարարն ու բարեկամն է

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Հեռագիր Հայաստանի Ռազմական ռևոլյուցիոն կոմիտեի նախագահին, *Երկեր, հատոր 31, էջ 550, Հայպետհրատ, 1952:*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Ադրբեջանի, Վրաստանի, Հայաստանի, Դաղստանի, Լեռնականների ռեսպուբլիկայի կոմունիստ ընկերներին, *Երկեր, հատոր 32, էջ 402—405, Հայպետհրատ, 1952:*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Ճառ, արտասանած 1961 թվականի մայիսի








6-ին Երևանում տեղի ունեցած հանդիսավոր նիստում՝ նվիրված Հայաստանում սովետական իշխանության հաստատման և Հայաստանի կոմունիստական պարտիայի կազմավորման 40-ամյակին, *Հայպետհրատ, 1961:*

Գ. Բ. ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ— Վ. Ի. Լենինը և Անդրկովկասի ժողովուրդների ազատագրումը, *Հայպետհրատ, 1960:*

Սովետական Հայաստանի 43 տարին, *հոդված, տպագրված «Ագիտատորի բլոկնոտ»-ի 1963 թվականի 22-րդ համարում:*

## 5. Լենինյան ազգային քաղաքականության հաղթանակը

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Թեզիսներ ազգային հարցի մասին, *Երկեր, հատոր 19, էջ 298—300, Հայպետհրատ, 1951:*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Ազգային քաղաքականության հարցի շուրջը, *Երկեր, հատոր 20, էջ 262—272, Հայպետհրատ, 1951:*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Ազգային իրավահավասարություն, *Երկեր, հատոր 20, էջ 287—289, Հայպետհրատ, 1951:*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Ազգային ինքնորոշման իրավունքի մասին, *Երկեր, հատոր 20, էջ 491—570, Հայպետհրատ, 1951:*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Սոցիալիստական ռևոլյուցիան և ազգերի ինքնորոշման իրավունքը (թեզիսներ), *Երկեր, հատոր 22, էջ 183—201, Հայպետհրատ, 1951:*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Պրոլետարական ռևոլյուցիայի ռազմական ծրագիրը, *Երկեր հատոր 23, էջ 91—96, Հայպետհրատ, 1951:*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Ազգությունների կամ «ավտոնոմիզացիայի» հարցի շուրջը, *Երկեր, հատոր 36, էջ 699—707, Հայպետհրատ, 1958:*

Պարտիայի խնդիրները ազգային հարաբերությունների բնագավառում, *ՍՄԿՊ ծրագիրը, Հայպետհրատ, 1961:*

## 6. Խաղաղ գոյակցության լենինյան սկզբունքը հաղթանակում է

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Խաղաղություն ժողովուրդներին, *Երկեր, հատոր 26, էջ 57—60, Հայպետհրատ, 1951:*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Դեկրետ հաշտության մասին, *Երկեր, հատոր 26, էջ 295—301, Հայպետհրատ, 1951:*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Խաղաղ գոյակցությունը Սովետական Միության արտաքին քաղաքականության գլխավոր կուրսն է, *տպագրված «ՍՄԿՊ XXII համագումարի նյութերը» գրքում, էջ 33—39, Հայպետհրատ, 1962:*

Ինդեքս՝ 77704

ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



СОДЕРЖАНИЕ



ОТДЕЛ ИДЕОЛОГИЧЕСКОЙ РАБОТЫ

ЦК КП АРМЕНИИ

# Агитатори блокнот

## № 7

## 1964

Խմբագիր՝ Վ. Խ. ԵՆԳԻԲԱՐՅԱՆ

ՎՖ 08175 Պատվեր 251 Տիրաժ 9300

Հանձնված է արտադրության 17/III 1964 թ.։
Ստորագրված է տպագրության 26/III 1964 թ.։

ՀՍՍՌ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի
Պոլիգրաֆարդյունաբերության Գլխավոր վարչության II տպարան,
Երևան, Կնունյանցի № 8։

Գինը 8 կոպ.։

Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿԿ Կենտկոմ, II հարկ, 71-րդ սենյակ, հեռախոս 2—52—78

Адрес редакции — Ереван, ЦК КП Армении, II этаж, ком. 71, телефон 2-52-78.